համար։ Այս թագաւորութեան մէջ պիտի մտնեն Էսթոնիա, Լեթոնիա եւ Լիթուանիա։ Գահին իբր թեկնածու կը ներկայացուին կոմս Ֆոլքէ Պէռնատոթ, Շուէտի թագաւորին եղբօրորդին եւ լեհ իշխան Ռատզիվիլ։

## Երկու հազար դաշնագիր 1918էն ի վեր

Ժընեւէն կը հաղորդեն որ 1918 Նոյեմբերէն ի վեր Ազգերու Դաշնակցութեան քարտուղարութեան մօտ արձանագրուած են 2000 միջազգային դաշնագիրներ։ 1928ին արձանագրուած 300 դաշնագիրներէն 24ը կը վերաբերին իրաւարարութեան, 59ը առեւտուրի եւ նաւարկութեան, 20ը՝ տնտեսական։

## Մեծ գողտարարութիւն մը

Մոսկուայի շինութեանց պաշտօնատունը երեւան հանեց մեծ գեղծարարութիւն մը։ Ձեռնարկուները, կառապաններն ու հայթայթիչները համաձայնած էին գողնալ 80 միլիոն ռուբլի եւ զանոնք ծախել անհատներու կամ մասնաւոր ընկերութեանց։ Մօտ հարիւր հոգի ձերբակալուեցան։

## Կեղծ դրամներու նոր գործ մը

Փեշթայէն կը հեռագրեն թէ Տէպրէչէնի մէջ երեւան հանուած է կեղծ դրամ պատրաստող աշխատանոց մը, որ կը գործէր երեք տարիէ ի վեր։ Ձերբակալուած են կարգ մը մարդիկ, որոնք կեղծ փէնկօներ կը տպէին։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

է միւսներուն վրայ։ Մինչ հոս բոլոր կուսակցութեանց պետերը պատրաստ են կացութեան մասին խորհրդակցելու Թագաւորին հետ, եւ թէ նոր շարժման մէջ ֆաշիսմի խնդիր չկայ։ Ալեքսանդր Թագաւորը ըրաւ այն ինչ որ աւելի քան տարիէ մը ի վեր կը պահանջէին բոլոր կուսակցութիւնները, սերպ թէ խրուաթ։ Բոլորն ալ կ՚ըսէին թէ Թագաւորը միայն կրնայ փրկել կացութիւնը։ Թագաւորը պէտք է գործէ։ Թագաւորը գործեց ահա՛ ու սերպ, խրուաթ, սլովէն եւ այլ ցեղերու համերաշխութիւնը Թագաւորութեան շուրջ՝ պէտք չէ զարմացնէ ոեւէ մէկը։

## Սերպիոյ նոր վարչաձեւը եւ Պուլկարիա

«Քայմզ»ի Սոֆիայի Թղթակիցը կը հեռագրէ.—

Պուլկար հանրային կարծիքը մեծ հետաքրքրութեամբ կը հետեւի Պելկրատի զինուորական դիկտատորութեան անցուդարձերուն։ Կ՚ընդունուի որ քաղաքական կուսակցութիւնները ձախողեցան եւրոպական պետութիւնը կազմակերպելու գործին մէջ եւ թէ Թագաւորին համար անհրաժեշտ էր անձնական պատասխանատուութիւնը ստանձնել։ Սակայն մամուլին մէջ որոշ յոռետեսութիւն մը կը տիրէ, անոր համար՝ որ իշխանութեան գլուխ եկած է Զինուորական Դաշնակցութիւնը, որուն նախագահը՝ զօր. Ժիվքովիչ, նոր կառավարութեան վարչապետը, իրականին մէջ դիկտատոր է։

Նկատի առնելով սերպ զինուորական շրջանակներու բացորոշ թշնամական դիրքը՝ զանազան ոչ-սերպ ազգերու, մանաւորապէս Մակեդոնացիներու պահանջած ազատութեանց դէմ, պուլկար քաղաքական կարծիքը շատ քիչ յոյս ունի որ նոր վարչաձեւը որեւէ բարւոքում առաջ պիտի բերէ պուլկարեւսերպ յարաբերութեանց մէջ։ Կը վախցուի նոյնիսկ որ այդ յարաբերութիւնները վտանգաւոր կերպով ծանրանան, քանի որ սերպ զինուորականները միշտ հովանաւորած են պուլկար հակազգային - համայնավար գաղթականները, որոնցմէ շատեր յանցապարտ արարքներու մէջ գտնուած են Պուլկարիոյ դէմ։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: E. SOUVIGNY





ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՀԱՄԱՍՏԵՂԻ ՊԱՏՄՈՒԱԾՔՆԵՐՈՒ ԵՐԿՐՈՐԴ ԳԻՐՔԸ
„ԱՆՁՐԵՒ"Ը
կը ծախուի «ՅԱՌԱՋ»ի խմբագրատունը:

ԱՐԵՒՄՏ. ԵՒՐՈՊ. Հ. ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ
Ա. ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
46bis Rue St. Didier, Victor Hugoի շքեղ սրահներուն մէջ
16 Մարտ Շաբաթ գիշեր ժամը 8.30էն մինչեւ լոյս
Գեղարուեստական այլազան ծրագիր, բազմապիսի անակնկալներ, ճոխ պիւֆէ, ճէյազպանտ, եւայլն։





## «Ֆորտ»ը Ռուսիոյ մէջ

Ամերիկացի հանրածանօթ գործարանատէր Հէնրի Ֆորտ Թուրքիայէն յետոյ խորհրդային Ռուսիոյ մէջ ևս ինքնաշարժի գործարան մը բանալու ձեռնարկներ կ'ընէ։ Ռուսիոյ մէջ հիմ. նելիք գործարանը պիտի արտադրէ տարեկան 100,000 կառք. որուն 100էն 60ը կառավարութեան եւ մնացածը Ֆորտի սեփականութիւնը պիտի ըլլայ։

Նկատելով որ Ֆորտ պատերազմէն առաջ ոեւէ կալուած, հետեւաբար եւ պահանջ չունէր Ռուսիոյ մէջ.բանակցութիւնները տարուեցան մեծ դիւրութեամբ։ Նոր գործարանը երկու տարիէն պիտի սկսի շինել հաճոյքի կառքեր եւ թրաքթորներ։

## Սեբաստիոյ դէպքին շուրջ

Պոլսոյ Պատժական Ա. ատեանը յունուար 14ին սկսաւ դատել «Իգտամ», «Աքշամ» եւ «Սօն Սաաթ» օրաթերթերուն պատասխանատու տնօրէններն ու արտօնատէրները, որոնք կը մեղադրուին թէ Սվազի մասին լուր մը հրատարակած եւ այսպէսով հանրային կարծիքը յուզած են։

Եղած հարցումներուն պատասխանելով, ամբաստանեալները յայտնեցին.— «Իգտամ»ի ընկերութիւնը Սիւրէյեա պէյ ծանօթ եւ վստահելի դէմք մըն է։ Հետեւաբար պատճառ չունէինք չհաւատալու իր հաղորդած լուրին, մանաւանդ որ հնարաւորութիւն չկար ստուգելու։ Ցետոյ, իրենք իրիկուան մօտերը կը մեկնին խմբագրատունէն, իսկ հեռագիրը եկած է ուշ ատեն»։

Հարցաքննութենէն վերջ ամբաստանեալներու փաստաբան Իրֆան Էմին պէյ յայտնեց թէ ընկերութեան մէջ ալ դատ բացուած է յիշեալ երեք թերթերուն դէմ, եւ պահանջեց միացնել երկու դատերը։ Խորհրդակցութենէ յետոյ, դատարանը ընդունեց այս առաջարկը, եւ դատավարութիւնը յետաձգեց յունուար 28ին։ Ցայտնի չէ թէ միացեալ դատը ընկերութեան՞ տեղի պիտի ունենայ թէ Պոլիս։

## Փախչան ձերբակալուեցաւ

Գրեցինք թէ սեղանաւոր Ֆէրնան Փաքման, որ հարցաքննիչ դատաւոր Կլարի կողմէ կանչուած էր «Գազէթ տիւ Ֆրան»ի խնդրին առթիւ, արտասահման փախաւ. իւրացնելէ վերջ մօտ 30 միլիոն ֆրանք։ Փաքման յաջողած էր փախչիլ Զուիցերիա եւ ոչ թէ Պելճիքա։ Ուրբաթ կէսօրէ վերջ Զուիցերիոյ Կլարուս քաղաքի մէկ դրամատունը ներկայացաւ՝ խնդրելու համար որ ընթացիկ հաշիւ մը բացուի իր անունով։ Պաշտօնեաները որոնք կարդացած էին Փաքմանի փախուստը, ըսին որ յաջորդ օրը ներկայանայ։ Ու անմիջապէս իմաց տուին ոստիկանութեան և դրամատան Ցուրիխի կեդրոնին։ Պեռնի ֆրանսական դեսպանատունը տեղեկանալով խնդրին՝ անմիջապէս ձերբակալման հրամանագիր բերել տուաւ Ֆրանսայէն։ Այդ պահուն Փաքման մեկնած էր Կլարուսէն եւ ճամբայ ելած՝ դէպի Սէն-Կալ։ Ոստիկանները ձերբակալեցին զայն Սէն-Կալի կայարանին մէջ։

Փաքմանի իսկական անունն է Պախմանն (գերման-հրեայ)։

## Երկրաշարժ եւ հրաբուխ

Քուամանայի (Վէնէզուէլլա) շրջանին մէջ պատահեցաւ սաստիկ երկրաշարժ մը։ Քուամանա քաղաքն ու Նաւահանգիստը քանդուեցան։ Երկու հարիւր հոգի մեռան եւ հազար վիրաւորուեցան։ Նիւթական կորուստ կը հաշուուի 10 միլիոն տոլար։

Երկրաշարժէն մասամբ կործանեցան նաեւ Քարիաքօ, Փորլամար եւ Պարչելոնա քաղաքները։ Հազիւ քանի մը տուներ կը մնան կանգուն Քուամանայի մէջ, որ 18000 բնակիչ ունի եւ Հարաւային Ամերիկայի եւրոպական ամէնէն հին գաղութն է։

Քարաքասէն քանի մը շոգենաւեր ղրկուեցան աղէտին վայրը՝ օգնութիւն հասցնելու համար աղէտեալներուն։

Քուամանա 1766ին եւ 1797ին եւս կործանած էր երկրաշարժէ։

∴ Պաթավիայէն կը հեռագրեն թէ վերջին 24 ժամուան ընթացքին Քրաքաթոա կղզիին մէջ հաշուած են 3135 հրաբխային պոռթկումներ։ Բոցերը 2000 ոտք բարձրութեան կը հասնին։ Մօտակայ շրջանին մէջ ծովը սաստիկ յուզուած է։

## Հ. Ց. Դ. ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷՆ

ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի ընկերներն ու ընկերուհիները՝ յառաջիկայ երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին, «Փլաս տ'Իթալի» Քաֆէ Օ Քլէր տը Լիւնի վերնայարկը։

Օրակարգ՝ հաշուետուութիւն Շրջ. կոմիտէի եւ նորի ընտրութիւն։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10

Le Gérant: E. SOUVIGNY

պիտի վճարէ անգլիացի գինուորներուն Միջագետքի մէջ պահուելուն համար եղած աւելի ծախքերը (Անգլիա կը հրաժարի այս պահանջէն՝ եթէ Իրաք ընդունի միւս կէտերը)։ 3.— Անգլիա պէտք է հաւանութիւն տայ Իրաքի բանակի վերին հրամանատարութեան մէջ կատարուած անուանումներուն համար։ 4.— Պաղտատի կառավարութիւնը պիտի գնէ Իրաքի երկաթուղիները, նոքէն որոշուելիք գինով մը։ 5.— Պասրայի նաւահանգիստին վարչութիւնը պիտի պատկանի Անգլիոյ։ 6.— Իրաք պիտի վճարէ Պաղտատի անգլ. մարզպանին եւ պաշտօնէութեան ռոճիկները։

Իրաքի ազգայնականները կը պահանջեն պարզապէս մերժել այս վիճելի բոլոր կէտերը։ Ֆէյսալ Թագաւորի կառավարութիւնը սակայն կ'ուզէ կարելի եղածին չափ պահպանել Անգլիոյ բարոյական եւ նիւթական աջակցութիւնը Իրաքի, ձերբազատուելով հանդերձ անոր գինուորական հոգատարութենէն։

## Իրաքի սահմանին վրայ

Պասրայէն կը հեռագրեն.— երկուշաբթի օր Քովէյթի հողին վրայ վէհապիներու կողմէ յարձակման ենթարկուածները բոլորն ալ կը պատկանին իրաքցի ցեղախումբերու՝ Էլ Սալման, Էլ Ջավապաա, Էլ Գուսայէ, Էլ ճավարիս եւ զէնի Մալէք։ Ցարձա ումը տեղի ունեցաւ Զոպէյրէն 40 մղոն հեռու ճիրֆանի մէջ։ Իրաքցիները՝ թիւով 200, բուռն ընդդիմութիւն ցոյց տուին եւ վնասներու ենթարկեցին Աքման ցեղախումբը։ Արշաւողները կը բաղկանային 200 ուղտապաններէ, մէկ ուղտին երկու մարդ. եւ 40 հեծեալներէ։ 20 իրաքցիներ սպաննուեցան եւ 30 վիրաւորուեցան։ Արշաւողները գողցան աւելի քան 4000 ոչխարներ, արջառ եւ ձիեր։

## Թուրքասուրիական սահմանին վրայ

*Թայմզ կը գրէ.— Քիլիսիստանի Մարտին քաղաքէն կը հաղորդեն որ Սուրիայէն արաբական հրոսախումբ մը արշաւած ըլլալով Թրքական հողէն ներս, ընդհարում մը ունեցած է Թուրք սահմանապահ ուժերուն հետ։ Սպաննուած է հրոսախումբին պետը՝ նշանաւոր աւազակ Հապուր օղլու Էովէտ։*

## Իտալիա 13 նոր մարտանաւ կը շինէ

*Իտալիոյ նախարարական խորհուրդը որոշեց շինել 10 հազար թոննոց 2 յածանաւ, 2 հետազօտիչ, 4 թորփիլահալած եւ 5 սուզանաւ։ Այս ծրագրին գործադրութեան պիտի ձեռնարկուի յառաջիկայ յունիսէն։*

*Այս առթիւ «Ճոռնալէ տ'Իտալիա» կը գրէ. «Նաւային շինութեանց ծրագիրը՝ որ վաւերացուեցաւ նախարարական խորհուրդին կողմէ՝ չի կրնար զարմացնել ո եւ է մէկը, տրուած ըլլալով որ բոլոր ազգերը արագօրէն կը սպառազինուին՝ հակառակ ծովային համաձայնագրերուն, Լոքառնոյի ոգիին եւ Քէլլոկի դաշինքին։ Օգտակար է սակայն դիտել տալ թէ Իտալիա իր նաւատորմը զօրացնելու եւ զարգացնելու մասին նախաձեռնարկ չէ, այլ հետեւող մը միւս պետութեանց՝ ինչպէս Ֆրանսայի, Անգլիոյ եւ Միացեալ Նահանգներու»։*

## Բոլշեւիկները Արաբիոյ մէջ

*Խորհրդային պատուիրակութեան եւ Եէմէնի Իմամ Եահեային միջեւ քանի մը ամիսէ ի վեր կատարուած բանակցութեանց հետեւանքով ստորագրուած է առեւտրական դաշնագիր մը։*

*«Թայմզ» կ'ըսէ թէ համաձայնութիւնը տնտեսական մեծ արժէք մը չի ներկայացներ, սակայն այն պայմանը թէ բոլշեւիկները Եէմէնի մէջ պիտի պահեն հայրենի առեւտրական պատուիրակութիւն մը՝ դիւանագիտական առանձնաշնորհներով, կրնայ օգտակար ըլլալ Գ. Միջազգայինի գործակալներուն, որոնք կրնան Եէմէնը գործածել իբրեւ խարիսխ՝ Հնդկաստանի մէջ պրոպագանդի համար։*

*Ատենէ մը ի վեր յարաբերութիւնները լաւ չեն Իմամ Եահեայի եւ Ատէնի կառավարութեան միջեւ։ Ատոր մէկ պատճառն է Իմամի մայրաքաղաք Սանա'այի մէջ ներկայութիւնը խորհրդային գործակալներուն։*














IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant F. SOUVIGNY






